# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





## ՀԱՐԱԶԱՏ ՊԱՐՏԻԱՅԻ ՀԵՏ

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը քննության առնելով Գ. Մ. Մալենկովի, Լ. Մ. Կագանովիչի, Վ. Մ. Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբի ֆրակցիոն, քայքայիչ գործունեությունը, որն ուղղված էր մեր պարտիայի լենինյան միասնության դեմ, սովետական ժողովրդի դեմ, արժանի պատիժ տվեց նրանց։

Հակապարտիական այդ խումբը հանդես էր գալիս պարտիայի այնպիսի կարևորագույն որոշումների դեմ ինչպիսիք են՝ ժողովրդական տնտեսության հետագա զարգացումը, ներպարտիական լենինյան նորմաների վերականգնումը, ռևոլյուցիոն օրինականության խախտումների վերացումը, ազգային ճիշտ քաղաքականության կիրառումը, միութենական ռեսպուբլիկաների իրավունքների ընդլայնումը, գյուղատնտեսության արագ զարգացումը, արդյունաբերության կառավարման վերակառուցումը, խամ և խոպան հողերի յուրացումը, որոնք







ի սպաս են դրված սովետական ժողովրդի բարեկեցության բարելավմանը։

Այդ խումբը միաժամանակ դիմադրություն էր ցույց տալիս սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան կուրսին, միջազգային լարվածության թուլացմանը և մյուս երկրների հետ Սովետական Միության բարեկամական հարաբերությունների հաստատմանը։

Չնայած հակապարտիական այդ խմբի դիմադրությանը և գործադրած ստոր միջոցներին, պարտիան հաստատակամորեն շարունակում էր իր իմաստուն արտաքին և ներքին ճիշտ քաղաքականությունը, շարունակում էր անշեղորեն կենսագործել պարտիայի 20-րդ համագումարի պատմական որոշումները, բոլոր ջանքերը գործադրում էր ծանր արդյունաբերությունը ամեն կերպ զարգացնելու, գյուղատնտեսությունը առաջ մղելու, ժողովրդի կենսամակարդակը անընդհատ բարելավելու համար։

Հակապարտիական խումբը չէր ուզում հասկանալ, որ արդի պայմաններում, երբ մեր սոցիալիստական արդյունաբերությունը աճել և հսկայական մասշտաբների է հասել, անհրաժեշտություն է զգացվում վերա-



կառուցել նրա կառավարման ղեկավարությունը, գտնել արդյունաբերությունը կառավարելու նոր կատարյալ ձևեր, բացահայտել եղած ռեզերվները, լրիվ օգտագործել մեր ունեցած բոլոր հնարավորությունները։ Արդյունաբերությունը է՛լ ավելի զարգացնելու նպատակով պարտիան ձեռնամուխ եղավ նրա վերակառուցմանը, որը արտահայտվեց տնտեսական շրջանների ստեղծմամբ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսիան, որը քննարկեց այդ հարցը, հատուկ օրենքով վերացրեց գերատեսչական պատնեշները արդյունաբերության զարգացման գործում, լայն իրավունքներ ընձեռեց միութենական ռեսպուբլիկաներին, որը ջերմ հավանություն և պաշտպանություն գտավ ամբողջ պարտիայի ու սովետական ժողովրդի կողմից։

Կտրված լինելով կյանքից և ժողովրդի աճող պահանջմունքներից, Մալենկովի, Կագանովիչի և Մոլոտովի հակապարտիական խումբը թերահավատորեն էր վերաբերվում գյուղատնտեսությունը զարգացնելու, երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու պարտիայի վերցրած կուրսին։ Այդ խումբը դեմ էր գը-

Խում կոլտնտեսություններում պլանավորման նոր կարգ մտցնելում, մթերքների արտադրությունը ավելացնելու ուղղությամբ կոլտնտեսականների շահագրգռվածությունը բարձրացնելու գործում, առարկում էր կոլտնտեսականների տնտեսություններից կատարվող գյուղատնտեսական մթերքների պարտադիր մատակարարումները վերացնելուն։

Մերկացված ու հակահարվածի արժանացած հակապարտիական խումբը դեմ գնաց բնակչության ամեն մի շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ ամենամոտ տարիներին ԱՄՆ-ին հասնելու մասին պարտիայի կոչին, որն այնքան սիրով ընդունվեց ժողովրդի կողմից։ Դրանով դըրսևորվում էր այդ խմբի աղայական, արհամարհական վերաբերմունքը դեպի ամենալայն մասսաների կենսական շահերը, թերահավատությունն ու անվստահությունը դեպի նրանց ստեղծագործական ուժերը։

Այս ամենի հետ միասին հակապարտիական խումբը իրեն նպատակ էր դրել փոխել պարտիայի ղեկավար օրգանների կազմը, որն ընտրված էր Կենտկոմի պլենումի կողմից։

Պլենումը արձանագրեց, որ ընկ. ընկ.



Մալենկովը, Կագանովիչը և Մոլոտովը գերի են դարձել հին պատկերացումներին, կտրվել են պարտիայի և երկրի կյանքից, չեն տեսնում դեպի կոմունիզմը ընթացող սովետական ժողովրդի կյանքում տեղի ունեցած փոփոխությունները, ցուցաբերում են պահպանողականություն, կառչում են աշխատանքի հին ձևերին ու մեթոդներին։

Կենտկոմի Հունիսյան պլենումը խստորեն դատապարտեց և անարգանքի սյունին գամեց հակապարտիական խմբի քայքայիչ, ֆրակցիոն գործունեությունը, որպես մեր պարտիայի լենինյան սկզբունքներին անհամատեղելի գործունեության և արժանի պատիժ տվեց նրանց։ Ղեկավարվելով պարտիայի լենինյան միասնությունը ամեն կերպ ամրապնդելու շահերով պլենումը Մալենկովին, Կագանովիչին և Մոլոտովին հանեց ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության կազմից և պլենումի կազմից, Շեպիլովին հեռացրեց ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղարի պոստից և հանեց Կենտկոմի Նախագահության անդամության թեկնածուների կազմից և Կենտկոմի անդամների կազմից։

Պլենումի որոշումը մեծ գոհունակությամբ և խանդավառությամբ ընդունվեց պարտիայի և ամբողջ ժողովրդի կողմից։

Ամենուրեք, մեր մեծ Հայրենիքի բոլոր վայրերում, արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, ՄՏ կայաններում, սովխոզներում, հիմնարկներում և ուսումնական հաստատություններում տեղի ունեցած սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովներում ելույթ ունեցող կոմունիստները զայրույթով ու վրդովմունքով էին խոսում Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբի ֆրակցիոն գործունեության մասին և իրենց անսահման նվիրվածությունը հայտնում պարտիայի գլխավոր գծի նկատմամբ: Այդ ժողովները, ինչպես նաև ակտիվի նիստերը իրենց ընդունած որոշումներում ջերմ հավանություն էին տալիս պլենումի ձեռնարկած միջոցառումներին և անվերապահորեն միանում նրա որոշմանը:

Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի հակապարտիական խմբի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը միահամուռ հավանություն գտավ նաև Հայաստանի պարտիական կազմակերպությունների և ամբողջ հայ ժողովրդի կողմից:

Ռեսպուբլիկայի և Երևանի պարտիական ակտիվի համատեղ ժողովը, ինչպես նաև



ռեսպուբլիկայի բոլոր հիմնարկ-ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում կայացած սկզբնական պարտկազմակերպությունների ժողովները լսելով Կենտկոմի պլենումի որոշման մասին՝ հակապարտիական խմբի ֆրակցիոն գործունեության առթիվ, խորապես դատապարտեցին ու անարգանքի սյունին գամեցին խմբի բոլոր մասնակիցներին:

Ի պատասխան պառակտիչների, մեր երկրի աշխատավորները ամենուրեք իրենց ելույթներում խոսք են տալիս է՛լ ավելի ծավալել սոցիալիստական մրցությունը, արտադրական բարձր ցուցանիշներով կատարել ստանձնած պարտավորությունները, անշեղորեն կենսագործել պարտիայի 20-րդ համագումարի որոշումները: Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի բանվոր ընկ. Վ. Ղազարյանը հանդես գալով ռեսպուբլիկայի ակտիվի նիստում ասաց.

— Մենք բանվորներս, ամբողջ հոգով շնորհակալ ենք մեր պարտիայի Կենտոմից, որը ժամանակին մերկացրեց Մալենկովի, Կագանովիչի և Մոլոտովի հակապարտիական խումբը և պաշտպանեց պարտիայի միասնությունը: Մեր գործարանի բոլոր բանվորները հավանություն են տալիս

Կենտկոմի պլենումի որոշմանը։ Մենք կըգործադրենք մեր բոլոր ուժերը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը արտադրական նոր նվաճումներով դիմավորելու համար։

Հավանություն տալով պարտիայի Հունիսյան պլենումի որոշումներին, ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները պարտավորվել են երկրին տալ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ՝ բնակչության կարիքները բավարարելու համար և ավելի շատ հումք՝ արդյունաբերության համար։

Պայքարում կոփված մեր պանծալի Կոմունիստական պարտիան այժմ ավելի միասնական է ու համախմբված, ինչպես երբեք։ Պարտիայի լենինյան միասնությունը, նրա երկաթե կարգապահությունը անխորտակելի է։ Պարտիան շրջապատված է սովետական ժողովրդի մեծ սիրով ու վստահությամբ։ Պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի աշխատավորները կշարունակեն իրենց պայքարը մեր հիասքանչ Հայրենիքի տնտեսական և ռազմական հզորությունը էլ ավելի բարձրացնելու համար, կոմունիզմի լիակատար հաղթանակի համար։

---

# ՄԱՅՐԱՔԱՂԱՔԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ ՊԱՏՎՈՎ ԿԿԱՏԱՐԵՆ ԻՐԵՆՑ ԽՈՍՏՈՒՄԸ

Հ. ՔՈԹԱՆՋՅԱՆ
ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

Մոտենում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը։ Երևանի գործարաններում ու ֆաբրիկաներում աշխատանքային և քաղաքական չտեսնված խանդավառություն է տիրում։ Բանվորները, ծառայողները և ինժեներա-տեխնիկական աշխատողները, ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները հաջողությամբ կենսագործելու վճռականությամբ լի, մտել են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ և ձգտում են այդ փառապանծ տոնը նշանավորել արտադրական նոր հաջողություննե-

րով, մեր երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի է՛լ ավելի վերելքով։

Երևան քաղաքի առաջավոր ձեռնարկությունների՝ Կիրովի անվան, Հայէլեկտրո, Ավտոդողերի, «Կանազ», Էլեկտրական ճըշգրիտ գործիքների գործարանների, Կարի առաջին ֆաբրիկայի, Ջեթ-օճառ կոմբինատի, երկաթուղային հանգույցի և այլ ձեռնարկությունների կոլեկտիվները պարտավորվել են գերակատարել համախառն ու նատուրալ արտադրանքի 1957 թվականի պետական պլանը, բարձրացնել արտադրողականությունը, բարելավել արտադրանքի որակը, հասնել արտադրական ձեռնարկությունների բարձր շահութաբերության։

Սոցիալիստական մրցության մեջ մտնելով Կիև քաղաքի աշխատավորների հետ, Երևանի արդյունաբերության աշխատողները պարտավորություն են ստանձնել վեցերորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանը տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով կատարել մինչև դեկտեմբերի 20-ը և երկրին տալ 140 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք, յուրացնել հաստոցների, կոմպրեսորների, պոմպերի, գեներատորների, տրանսֆորմատորների և արտադրանքի այլ տեսակների նոր, ավելի կա-



տարելագործված կոնստրուկցիաների սերիական արտադրությունը։

Այն խոշոր խնդիրները, որոնք այժմ դրըված են ձեռնարկությունների առաջ՝ ստանձնած պարտավորությունների կատարման կապակցությամբ, պահանջում են մեր ագիտատորներից, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ լայնորեն ծավալել մասսայական-քաղաքական աշխատանքը։ Հարկավոր է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր աշխատավոր ժամանակին և բարձր ցուցանիշներով կատարի ստանձնած պարտավորությունները։

Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների հաջող կատարումը մեծ չափով կախված է առաջավոր փորձի մասսայականացումից։ Ագիտատորների պարտքն է լայնորեն պրոպագանդել սոցիալիստական աշխատանքի օրինակներ տվող առաջավորների և նորարարների փորձը։

Բանավոր զրույցների ժամանակ, ցուցադրական ագիտացիայի և պատի թերթերի միջոցով անհրաժեշտ է պարզաբանել, թե առաջավորները ինչպես են հաջողությունների հասնում, կազմակերպական, տեխնիկական ինչ կատարելագործություններ են մըտ-

ցընում, արտադրության ինչպիսի նոր, դեռ չօգտագործված ռեզերվներ են որոնում, որպեսզի բարձրացնեն աշխատանքի արտադրողականությունը, տնտեսեն հումքը, նյութերը, էլեկտրաէներգիան, իջեցնեն թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։

Սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում մեծ նշանակություն ունի մրցության հրապարակայնությունը՝ ձեռնարկության, ցեխի և յուրաքանչյուր առանձին աշխատողի ստանձնած պարտավորությունների կատարման սիստեմատիկ ստուգումն ու հաշվառումը։

Մեզ մոտ, քաղաքի շատ ձեռնարկություններում դրված են առանձին ցեխերի և արտադրական բրիգադների պարտավորությունների կատարման ցուցատախտակներ։

Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները ժամանակին կատարելու գործին օգնում է լավ ձևավորված ցուցադրական ագիտացիան՝ պլակատները, լոզունգները, պատի թերթերը և այլն։ Խրախուսելով արտադրության լավագույն մարդկանց՝ ցուցադրական ագիտացիան միաժամանակ ոգևորում է ետ մնացողներին առաջավորներին հասնելու համար։

Կարի առաջին ֆաբրիկայի, էլեկտրատեխ-



նիկական գործարանի և քաղաքի մի շարք այլ ձեռնարկությունների ցեխերում, ճաշարաններում, բակերում և աչքի ընկնող տեղերում փակցվել են պլակատներ ու լոզունգներ, որոնք կոչ են անում բանվորներին՝ պայքարել ստանձնած պարտավորությունների կատարման համար։

Աշխատավորների շրջանում մեծ ազդեցություն են գործում «Կայծակ», «Երգիծանքի պատուհան» պլակատները։ Կարի առաջին ֆաբրիկայում բանվորների մեջ մեծ ժողովրդականություն են վայելում սիստեմատիկորեն լույս տեսնող «Կոկորդիլոսը», որն անողոքաբար խարազանում է խոտանարարներին։ «Կոկորդիլոսի» հերթական համարները ֆաբրիկայի ագիտատորները լայնորեն օգտագործում են նաև իրենց զրույցների ընթացքում։ Այս բոլորի շնորհիվ ֆաբրիկայում այժմ գրեթե վերացված է խոտանը։

Շատ ձեռնարկություններում անց են կացվել բանվորական ժողովներ՝ նվիրված ստանձնած պարտավորությունների կատարմանը։

Մեր ագիտատորները հմտորեն պետք է օգտագործեն ագիտացիայի բոլոր ձևերն ու մեթոդները, որպեսզի մոբիլիզացնեն մրցու-

թյան մասնակիցներին՝ հաջողությամբ կատարելու Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Մեծ տոնի նախապատրաստման և անցկացման կապակցությամբ Սովետական Միության բոլոր աշխատավորներին ուղղված ՍՄԿՊ Կենտկոմի կոչերը լայն արձագանք գտան Երևան քաղաքի աշխատավորների մեջ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցության մեջ է մտել Երաեղարդի գործարանի կոլեկտիվը, որը ժամկետից 20 օր շուտ կատարեց իր առաջին կիսամյակի պլանը։

Նշանակալի հաջողություններ են ձեռք բերել Սպանդարյան շրջանի արդյունաբերության աշխատողները, որոնք հինգ ամսվա պլանը կատարել են 104,1 տոկոսով և երկրին տվել են ավելի քան 7 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։

Կատարելով ստանձնած պարտավորությունները, Ալյումինի գործարանի Ա. Մխիթարյանի բրիգադան ամեն ամիս գերակատարում է արտադրական պլանները, ընդ



որում ապահովելով որակական բարձր ցուցանիշներ։

Սոցիալիստական մրցության առաջավորների թվում են Կիրովի անվան և Ավտոդողերի գործարանները։ Այստեղ բանվորները ակտիվորեն մասնակցում են ռացիոնալիզատորական աշխատանքին։ Գործարանի 30—30ա ցեխի էլեկտրիկներ Բաղալյանի, Մելքոնյանի, Հեթումյանի և մյուսների ռացիոնալիզատորական առաջարկները, որոնք ներդրվել են արտադրության մեջ, տարեկան տալիս են ավելի քան 27 հազար ռուբլու տնտեսում։ Ռետինատեխնիկական առարկաների գործարանի ռացիոնալիզատորներ Մանուկյանը և Վարդանյանը առաջարկ մտցրին ռետինի մնացորդների օգտագործման մասին։ Այդ առաջարկի կիրառումից գործարանը տարեկան ստանում է ավելի քան 500 հազար ռուբլու տնտեսում։

Մեր խնդիրն է յուրաքանչյուր ձեռնարկությունում, յուրաքանչյուր կառույցում է՛լ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը ի պատիվ առաջիկա մեծ տոնի, հասնել այն բանին, որ մրցության մեջ ընդգրկվեն արտադրական ձեռնարկությունների բոլոր բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, ծառայողները։

# ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ

Ս. ԳՅՈՒՐՋՅԱՆ
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի գյուղբաժնի ցուցահանդեսի խմբի պետ

*Հունիսի 2-ից մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում նորից իր աշխատանքները սկսեց Համամիութենական գյուղատնտեսական և արդյունաբերական ցուցահանդեսը։*

*Ցուցահանդեսը իրավամբ համարվում է մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսության ձեռք բերած հաջողությունների և աննախընթաց վերելքի հայելին։ Այստեղ պարզ կերպով կարելի է տեսնել թե Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ինչպիսի վերելք է ապրել մեր գյուղատնտեսությունը Հայրենական պատերազմից հետո։*

*Ցուցահանդեսը տարեցտարի հարստացվում է նոր պավիլիոններով և բազմահազար*



*էքսպոնատներով։ Այժմ ցուցահանդեսն ունի 207 հեկտար տարածություն, ուր տեղավորված են ավելի քան 300 պավիլիոն ու կառուցում, այդ թվում գլխավոր պավիլիոնը, միութենական ռեսպուբլիկաների 15, ինքնավար ռեսպուբլիկաների՝ 12, ճյուղային՝ 16 և բազմաթիվ այլ պավիլիոններ։ Ցուցահանդեսում աճեցվում են ավելի քան 55 հազար ծառ, որից 7.000-ը պտղատու։ Կան կես միլիոնից ավելի թփուտներ, 60 հազար տնկի, ավելի քան 50 հազար վարդենի և 600 հազար զանազան ծաղիկներ։ Միայն այս տարվա գարնանը ցուցահանդեսի տերիտորիայում տնկվել է ավելի քան 5 միլիոն միամյա բույս, որոնց մեծ մասը փարթամորեն աճում է։ Այս տարի ցուցահանդեսի դաշտամասերում մշակվում են աշնանացան ցորենի 65 տեսակ, որոնք շրջանայնացված են Միության տարբեր գոտիներում։ Մշակվում են նաև գարնանացան ցորենի, կորեկի, հնդկացորենի և եգիպտացորենի տեսակներ։ Մեծ տեղ են գրավում եգիպտացորենի հիբրիդային սերմերով կատարված ցանքերը։ Միաժամանակ ցուցահանդեսում գործնականորեն ցույց են տրվում մոլախոտերի դեմ տարվող պայքարի միջոցները։*



«ՄՏԿ-ի դաստակերտ» բաժնում տեղծված է ռադիոֆիկացված հարթակ, որտեղ գյուղատնտեսական մեքենաները ցուցադրվում են հենց աշխատանքի ժամանակ։

Այս տարի էքսկուրսանտները կծանոթանան ցուցահանդեսի մասնակից Մերձմոսկովյան 62 առաջավոր կոլտնտեսությունների աշխատանքի հետ։

Ցուցահանդեսի պավիլիոններում կարելի է տեսնել մեր երկրի հայտնի առաջավոր կոլտնտեսությունների և բարձր բերքի անվանի վարպետների կողքին նաև հարյուրավոր նոր կոլտնտեսությունների և առաջավոր մեթոդներով աշխատող հազարավոր դաշտավարների և անասնապահների աշխատանքի ցուցանիշները, որոնք ընդամենը մեկ-երկու տարի առաջ կամ ետ էին մնում, կամ ցածր ցուցանիշներ ունեին։ Գալով ցուցահանդես, և ուսումնասիրելով առաջավորների աշխատանքի փորձը և այն կիրառելով իրենց կոլտնտեսություններում, սովխոզներում և անասնապահական ֆերմաներում նրանք մեծ հաջողությունների են հասել և ցուցահանդեսի թեկնածու դառնալու իրավունք նվաճել։ Դրա պերճախոս ապացույցը կարելի է համարել այն, որ տարեցտարի ավելանում է Համամիութենական



գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցների թիվը։ Այսպես, օրինակ, եթե ցուցահանդեսի բացման առաջին տարին՝ 1954 թվականին ցուցահանդեսի մասնակիցների թիվը կազմում էր 173 հազար, ապա 1956 թվականին այն հասավ մինչև 300 հազարի, իսկ ընթացիկ 1957 թվականին՝ կհասնի մոտ 400 հազարի։ Գյուղատնտեսության բնագավառում իրենց ձեռք բերած հաջողությունների համար այս տարի ցուցահանդեսին մասնակցելու պատվավոր իրավունք են ձեռք բերել ոչ միայն հազարավոր նոր կոլտնտեսություններ և ամբողջ շրջաններ, այլև 46 երկրամաս, մարզ և ռեսպուբլիկա։

Մեր ռեսպուբլիկայի մի շարք կոլտնտեսություններ նույնպես լայն ցուցադրման են ներկայացված։ Օրինակ, լայն կերպով ցուցադրվում է Շահումյանի շրջանի 18-րդ պարտհամագումարի անվան կոլտնտեսության առաջավորների փորձը, որոնք 100 հեկտար հողատարածության դիմաց ստացել են 862 ցենտներ կաթ և 92 ցենտներ միս, յուրաքանչյուր հեկտար հողի եկամուտը կազմում է 9014 ռուբլի։ Նույն շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը 100 հեկտար հողատարածության դիմաց ստացել է 640 ցենտներ կաթ, 120 ցենտներ միս,

յուրաքանչյուր մեկ հեկտար հողատարածությունից ստացվող դրամական եկամուտը եղել է 9694 ռուբլի։ Կոլտնտեսականներն ամեն մի աշխօրի դիմաց ստացել են 50 ռուբլի, հացահատիկ, երկու կիլոգրամ խաղող, գինի, յուղ, պանիր և այլն։

Այս տարի ցուցահանդեսում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և անասնապահական մթերքների արտադրանքը մեծ չափով ավելացնելու լավագույն ցուցանիշների հետ միաժամանակ ցուցադրվում են նաև առաջավոր կոլտնտեսությունները և սովխոզները, որոնք աչքի ընկնող հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման ուղղությամբ։ Օրինակ, եղբայրական Ղազախական ռեսպուբլիկայի պավիլիոնում կարելի է տեսնել թե ինչպես Ակմոլինսկի մարզի Կիրովի անվան սովխոզի բանվորները մեկ ցենտներ ցորեն արտադրելու համար ծախսվող մարդուժի քանակը իջեցրել են մինչև 0,6 ժամի։ Ցորենի մեկ ցենտների ինքնարժեքը նրանց մոտ կազմում է 15,9 ռուբլի։

Մեր ռեսպուբլիկայի մի շարք առաջավոր կոլտնտեսություններ նույնպես պայքարում են ցորենի, կաթի, մսի, խաղողի, ծխախո-



տի և այլ մթերքների ինքնարժեքը իջեցնելու համար։ Օրինակ, Արտաշատի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսությունը 1955 թվականին յուրաքանչյուր մեկ ցենտներ խաղողի արտադրության վրա ծախսել է 7,2 աշխօր, իսկ 1956 թվականին՝ միայն 3,36 աշխօր. Նույն շրջանի Անաստասավան գյուղի կոլտնտեսությունը 1955 թվականին մեկ ցենտներ խաղողի արտադրության վրա ծախսել է 3,9 աշխօր, իսկ 1956 թվականին՝ 2,2 աշխօր։ Կալինինոյի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը 1955 թվականին մեկ ցենտներ կաթի արտադրության վրա ծախսել է 7,1 աշխօր, 1956 թվականին՝ 4 աշխօր։ Շամշադինի շրջանի Այգեձոր գյուղի կոլտնտեսությունը մեկ ցենտներ ծխախոտի հումք ստանալու համար 1955 թվականին ծախսել է 36 աշխօր, իսկ 1956 թվականին՝ 30 աշխօր և այլն։

Ցուցահանդեսում մեծ հետաքրքրություն են ներկայացնում անասնաբուծական պավիլիոնները, ուր ցուցադրվում են ավելի քան 2.500 կով, խոզ, ոչխար, այծ, ձի և մոտ 8 հազար թռչուն։ Այս պավիլիոններում կարելի է տեսնել թե ինչպես են առաջավոր կոլտնտեսությունները, սովխոզները և ա-

նասնապահները խնամում, կերակրում ու պահպանում անասուններին։

Ահա ոչխարաբուծական պավիլիոնը։ Այստեղ էքսկուրսանտները կարող են տեսնել տարբեր ցեղերի լավագույն ոչխարներ, որոնք ունեն բարձր բրդատվություն և տալիս են մեծ քանակությամբ միս։

Այդ բարձր մթերատու ցեղական անասունները կոլտնտեսություններում և սովխոզներում տարածելու ու բազմացնելու նպատակով այս տարի առաջին անգամ ցուցահանդեսում նախատեսվում է վաճառել ավելի քան 1500 մոզի ու հորթ, մատղաշ խոյ, մաքի և ձի։

Այս տարի ցուցահանդեսում կկազմակերպվեն հացահատիկի, եգիպտացորենի, բանջարեղենի, կարտոֆիլի կերի և ուրիշ կուլտուրաների «շաբաթներ»։ Այդ «շաբաթների» ընթացքում ցուցահանդես կհրավիրվեն գյուղատնտեսության այն առաջավորները, որոնք աճեցրել ու ներկայացրել են լավագույն էքսպոնատներ։ Հատուկ մասնագիտական հանձնաժողովների միջոցով գնահատման կենթարկվեն այդ էքսպոնատներն ու լավագույնները կնշվեն ցուցահանդեսի վկայականներով, իսկ այդ էքսպոնատները աճեցրած կոլտնտեսու-



թյուններն ու առաջավորները կպարգևատրվեն գլխավոր կոմիտեի դիպլոմներով և մրցանակներով։

Անցյալ տարիների աշխատանքի փորձը ցույց տվեց, որ ավելի նպատակահարմար է ցուցահանդես հաճախեն միատեսակ մասնագիտության տեր մարդիկ, օրինակ՝ հացահատիկային, բամբակագործական, այգեգործական, ծխախոտագործական և պտղաբուծական բրիգադների բրիգադավարների, օղակավարների, տրակտորային բրիգադների բրիգադավարների, տրակտորիստների, կոմբայնավարների, կթվորների, հովիվների, խոզապահների և այլ մասնագիտության մարդկանցից կազմված առանձին խմբեր։ Ցուցահանդես կհաճախեն և այժմ հաճախում են մեր կոլտնտեսությունների, սովխոզների ու ՄՏԿ-ների ղեկավար աշխատողները, ինչպես նաև գյուղատնտեսության մասնագետները։

Մասնագիտացված խմբերի համար տեղում կազմակերպվելու են հատուկ զրույցներ, դասախոսություններ, կարճատև կուրսեր։ Նրանք ավելի խոր կերպով կարող են ուսումնասիրել իրենց մասնագիտությանը վերաբերող առաջավոր կոլտնտեսությունների և սոցիալիստական աշխատանքի հե-

տոմների փորձը, անձամբ լսել նորարարներին և ծանոթանալ նրանց աշխատանքի ձևերի ու մեթոդների հետ։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի տերիտորիայում հունիսի 2-ից բացվել և գործում է նաև Համամիութենական արդյունաբերական ցուցահանդեսը։ Այստեղ երկրորդ տարին է, որ ցուցադրվում է մեր սոցիալիստական արդյունաբերության հաջողությունները պատկերող էքսպոնատներ։ Ընթացիկ տարում ցուցադրվում է մոտ 50 հազար էքսպոնատ, հազարավոր նորագույն մեքենաներ, հաստոցներ, ապարատներ։ Ցուցահանդեսում կարելի է ծանոթանալ տեխնիկայի վերջին նորությունների հետ, որոնք արդեն ներդրվել և արմատավորվել են մեր արդյունաբերության մեջ։

Արդյունաբերական ցուցահանդեսն ունի 20 պավիլիոն, այդ թվում մեքենաշինության, հաստոցաշինության, ատոմային էներգիան խաղաղ նպատակների համար օգտագործելու, երկրաբանության, նավթային, քիմիական, թեթև արդյունաբերության և շատ ուրիշ պավիլիոններ։

Արդյունաբերական ցուցահանդեսում մեր էքսկուրսանտները կարող են տեսնել



նաև առաջնակարգ մեքենաներ ու գործիքներ, որոնք պատրաստվել են մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում։ Այնտեղ կարելի է տեսնել Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի թողարկած շարժական էլեկտրակայանները և գեներատորները, որոնք հայտնի են ոչ միայն մեզ մոտ, այլև արտասահմանում, Ձերժինսկու անվան գործարանի հաստոցները, էլեկտրաճշգրիտ գործարանի պրիբորները և այլն։

Մեր երկրի երկաթուղային ժամանակակից շարժական կազմին ծանոթանալու համար, արդյունաբերական ցուցահանդեսում կա հատուկ հրապարակ, որտեղ կարելի է տեսնել վագոններ, հուժկու ջերմաքարշեր և էլեկտրաքարշեր, որոնցից յուրաքանչյուրը կարող է տանել մինչև 3,5 հազար տոննա կշիռ ունեցող գնացք։ Դիտելով ցուցահանդեսը այցելուն հաստատ համոզմունք կունենա այն մասին, թե ինչպես գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումները՝ ատոմային էներգիան մեր երկրում օգտագործվում է խաղաղ նպատակների համար, արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում։

Այս տարի ցուցահանդեսում բացվել է

նաև «ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիա» պավիլիոնը։ Այստեղ ցուցադրված են ակադեմիայի ինստիտուտների կոլեկտիվների նորագույն աշխատանքները։ Այցելուն ծանոթանում է ոմնիկալ էքսպոնատներին՝ մեքենաներին ու սարքերին, սկսած փոքր հաշվիչ-խրոնոգրաֆից, որով կարելի է չափել վայրկյանի մեկ տասնհազարերորդ մասին հավասար տևողությունը, և վերջացրած ստորջրյա հեռուստատեսով, որը հնարավորություն է ընձեռում մինչև 200 մետր խորության վրա ուսումնասիրել ստորջրյա բուսական ու կենդանական աշխարհը։ Մեծ թվով էքսպոնատներ են ցուցադրված կիսահաղորդիչների, միջուկային ֆիզիկայի, քիմիայի, հաշվիչ սարքերի բաժիններում։

Մեր երկրի աշխատավորները, որոնց թվում նաև Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը պատվով դիմավորելու և այն լավագույն գործերով նշանավորելու համար լուրջ պարտավորություն ենստանձնել։ Այժմ նրանք պայքարում են ստանձնած պարտավորությունները գերազանց ցուցանիշներով կատարելու համար։

---

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԵՎ ՈՒՍԱՆՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ 6-ՐԴ ՖԵՍՏԻՎԱԼԸ

## ՑՐ. ՄԱՐՈՒԹՅԱՆ

Այս տարվա հուլիսի 28-ից մինչև օգոստոսի 12-ը Մոսկվայում տեղի կունենա դեմոկրատական երիտասարդության համաշխարհային 6-րդ ֆեստիվալը։ Այստեղ ջերմորեն միմյանց կհանդիպեն Եվրոպայի, Աֆրիկայի, Ասիայի, Ամերիկայի, հեռավոր Ավստրալիայի տասնյակ հազարավոր պատանիներ ու աղջիկներ։

Աշխարհի յուրաքանչյուր առաջադեմ երիտասարդ մարդու համար չկա ավելի մեծ ուրախություն, քան այն, որ կտրի ծովերն ու օվկիանոսները, մայր ցամաքներն ու երկրները և գա Մոսկվա մասնակցի այդ ֆեստիվալին, ծանոթանա Սովետական Միության հետ, սոցիալիզմի խոշորագույն նվաճումների հետ, ամրապնդի իր բարեկամությունը սովետական հերոսական երիտասարդության հետ։

Այժմ աշխարհի բոլոր ծայրերում հնչում են պատանիների ու աղջիկների սրտաբուխ, նըվիրական բառերը՝ «խաղաղություն», «բարեկամություն», «ազատություն»։

Ամբողջ աշխարհի առաջադեմ երիտասարդության ներկայացուցիչները գալիս են մեր երկիրը, սոցիալիզմի երկիրը, ուր երիտասարդությունը իր հայրենասեր խիզախումներով, պատմական գործերով միշտ էլ հիացմունք է առաջացնում, ոգեշնչում բոլոր երկրների երիտասարդներին, նոր կյանքի կոչում միլիոններին։

Այժմ աշխարհի շատ երկրներում, ինչպես նաև մեր անծայրածիր Հայրենիքում ավարտվել են երիտասարդության ֆեստիվալները։

Երիտասարդության շրջանային և քաղաքային ֆեստիվալները հաջողությամբ անցան նաև Հայաստանում, որին մասնակցեցին ավելի քան քառասուն հազար պատանիներ ու աղջիկներ։ Այդ ֆեստիվալներում առաջնություն շահած եռեսուն երգեցիկ խմբեր, քառասուն երգի-պարի անսամբլներ, 15 պարային խմբեր և 150 անհատ կատարողներ իրավունք ստացան մասնակցելու ռեսպուբլիկական ֆեստիվալին և կոնկուրսներին։ Դրանցից 30 անհատ կատարողներ և 11 կոլեկտիվներ ռեսպուբլիկական ֆեստիվալում ար-



ժանացան առաջին կարգի դիպլոմի և ոսկե մեդալի, 51 կոլեկտիվների և անհատ կատարողների շնորհվեցին երկրորդ կարգի դիպլոմ և արծաթե մեդալ, իսկ 45 անհատ կատարողների ու կոլեկտիվների տրվեցին բրոնզե մեդալ։

Ռեսպուբլիկական ֆեստիվալի եզրափակիչ հանդեսներին մասնակցեցին շուրջ 10 հազար մարդ։

Առաջին կարգի դիպլոմի և ոսկե մեդալի արժանացան Թալինի շրջանի Աշնակ գյուղի սասունցիների պարի խումբը, Միկոյանի շրջանի Շահումյանի անվան կոլտնտեսության երգի-պարի խումբը, Ղափանի կուլտուրայի տան երգի-պարի անսամբլը, Լենինականի երկաթուղայինների Սևոյանի անվան կուլտուրայի պալատի երգի-պարի անսամբլը և ուրիշներ։

Երկրորդ կարգի դիպլոմ և արծաթե մեդալ շնորհվեց Լենինականի Մոլոտովի անվան մանվածքային ֆաբրիկայի շրթհարմոնիստների անսամբլին, Լենինականի տրիկոտաժի ֆաբրիկայի երգի-պարի անսամբլին, Սևանի շրջանային կուլտուրայի տան երգչախմբին, Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի երգի-պարի անսամբլին և շատ ուրիշների։

Ռեսպուբլիկական ֆեստիվալում առաջնություն շահած կոլեկտիվները և անհատ կատարողները, ինչպես նաև սպորտային պատվիրակությունը կմասնակցի երիտասարդության համամիութենական ֆեստիվալին։

Ֆեստիվալին մասնակցելու համար Մոսկվա են գալու 140 երկրների 30 հազար պատանիներ և աղջիկներ։ Ֆրանսիայի 42 երիտասարդական կազմակերպություններից Մոսկվայի ֆեստիվալին կմասնակցի 2000 պատվիրակ, Եգիպտոսից՝ 550, Անգլիայից՝ 1300, Ռումինիայից՝ 1000, Գերմանիայի Ֆեդերատիվ ռեսպուբլիկայից՝ 2200։ Եվ այսպես հազարավոր պատվիրակներ կգան Չինաստանից, Հնդկաստանից, Ֆինլանդիայից, Հոլանդիայից, ԱՄՆ-ից, Ալբանիայից, և այլ երկրներից։

Ոչ լրիվ տվյալներով համաշխարհային 6-րդ ֆեստիվալին մասնակցելուն պաշտպանում են 12 միջազգային կազմակերպություն և 580 այլ կազմակերպություն։

Շատերին կհետաքրքրի թե ինչ է տեղի ունենալու Մոսկվայում ֆեստիվալի օրերին։ Նախ և առաջ այնտեղ տեղի կունենա երիտասարդության 3-րդ միջազգային սպորտային ընկերական խաղեր, որին կմասնակցեն աշխարհի սպորտային լավագույն կոլեկտիվնե-



րը, ինչպես նաև հայտնի սպորտսմեններն ու չեմպիոնները։

Ֆեստիվալի օրերին Մոսկվայում կկազմակերպվեն երիտասարդության հանդիպումներ ըստ պրոֆեսիաների։ Տեղի կունենա գեղարվեստական ինքնագործունեության կոնկուրսներ, սպորտային մրցումներ, կբացվեն զանազան ցուցահանդեսներ, կկազմակերպվեն գյուղական երիտասարդության տոն, աշխատանքի, երգի ու պարի տոն, ինչպես նաև կարնավալներ։

Ֆեստիվալի բացումը տեղի կունենա հուլիսի 28-ին։ Նույն օրը, երեկոյան սպորտի պալատում տեղի կունենա միջազգային մեծ համերգ, հետևյալ օրը կկայանա «երիտասարդական թատրոնների հանդիպման» բացումը։ Օգոստոսի 2-ին կկայանա երգի-պարի տոն, օգոստոսի 8-ին կկազմակերպվեն երիտասարդ տաղանդների ելույթներ, հանդես կգան ֆեստիվալի լաուրեատները, գեղարվեստական կոնկուրսներում հաղթողները, օգոստոսի 10-ին տեղի կունենա մեծ կարնավալ։ Բացի այդ, ստադիոններում և ֆիզկուլտ դահլիճներում, զբոսայգիներում և կուլտուրայի պալատներում կկազմակերպվեն ֆեստիվալի մասնակիցների հանդիպումներ գիտնականների, գրողների, արտիստների հետ,

տեղի կունենան բարեկամական դիսպուտներ և դիսկուսիաներ, ինչպես նաև ուրախ խաղեր կկազմակերպվեն Մոսկվայի հրապարակներում և զբոսայգիներում։

Ֆեստիվալային օրերին տեղի կունենան սովետական, իտալական, հունգարական, ճապոնական, չինական, չեխոսլովակյան, ֆրանսիական, եգիպտական, հնդկական լատինա-ամերիկյան, գերմանական և անգլիական, ինչպես նաև ամերիկյան կինոյի երեկոներ, ուր կցուցադրվեն գեղարվեստական լավագույն ֆիլմեր։

Ամենուրեք կլինեն ֆեստիվալի խորհրդանշաններ, վիթխարի մի երիցուկ, որի կենտրոնում գտնվում է երկրագունդը, իսկ կողքից բաժանվում են 5 բազմագույն ծաղկաթերթեր, որոնք սիմվոլացնում են երկրագնդի մայր ցամաքների գույները՝ նարնջագույնը՝ Եվրոպայի, դեղինը՝ Ասիայի, կապույտը՝ Ամերիկայի, մանուշակագույնը՝ Աֆրիկայի, կանաչը՝ Ավստրալիայի։

Կրեմլից վերև կճախրի ֆեստիվալի խորհրդանշանով աերոստատը։

Ահա գեղանի Լուժնիկ ստադիոնը, որի վրա իր թևերն է փռել ձյունասպիտակ հսկայական աղավնի—աերոստատը՝ խաղաղության սիմվոլը։



Աշխարհի երիտասարդությունը ֆեստիվալի տասնհինգ օրերի ընթացքում լիիշխան տերն է լինելու Մոսկվայի վաթսուն կուլտուրայի պալատների ու տների, վեց համերգային դահլիճների, քսանհինգ կինո-թատրոնների, քսաներկու թատրոնների, հարյուրավոր զբոսայգիների, պուրակների, բուլվարների և ստադիոնների։

Օգոստոսի 12-ին հանդիսավոր կերպով կփակվի խաղաղության և բարեկամության երիտասարդության համաշխարհային 6-րդ ֆեստիվալը։

Պատանիներն ու աղջիկները կմեկնեն իրենց հայրենիքը, չնայած նրան որ նրանից նորից կբաժանեն ծովերն ու օվկիանոսները, մայր ցամաքները, սակայն միևնույն է, նրանք իրար ձեռք կմեկնեն, կզգան միմյանց մոտիկությունը և հստակորեն կլսեն փոխադարձ երդման խոսքերը՝ միշտ հավատարիմ լինել խաղաղության ազնիվ գործին, ամբողջ երկրագնդի երիտասարդության բարեկամության գործին՝ անկախ ազգային պատկանելիությունից, դավանանքից և քաղաքական համոզմունքից։

---

# ԱՇԽԱՐՀԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՁԱՅՆԸ

## Վ. ՌՈԴԻՈՆՈՎ

Աշխարհի բոլոր ծայրերից ամեն օր հաղորդագրություններ են ստացվում այն մասին, թե ինչպես աճում է ժողովրդական շարժումը ատոմային ու ջրածնային զենքն արգելելու և նրա փորձարկումները դադարեցնելու համար։

Արդեն մի քանի տարի է, որ բոլոր երկրները մտահոգությամբ հետևում են ջերմամիջուկային զենքի արգելման և նրա փորձարկումների դադարեցման հարցի քննարկմանը Միավորված Ազգերի Կազմակերպությունում։ Դեռևս սրանից մի քանի տարի առաջ ՍՍՌՄ կառավարությունը Միավորված Ազգերի Կազմակերպություն մտցրեց մի բանաձև, որը նախատեսում էր անհապաղ դադարեցնել միջուկային զենքի փորձարկումները, ընդ որում առաջարկվում էր այդ հարցը լուծել անկախ զինաթափման ամբողջ պրոբլեմի վերաբերյալ համաձայ-



նության հասնելուց։ Սակայն այդ առաջարկը հավանություն չգտավ ԱՄՆ-ի և արևմտյան մյուս տերությունների կողմից։

Հետագայում Սովետական կառավարությունը քանիցս կրկնեց ատոմային զենքի փորձարկումներն անհապաղ դադարեցնելու մասին իր առաջարկը, այն դիտելով որպես առաջին քայլ՝ ատոմային զենքը արգելելու, այդ զենքը պետությունների սպառազինություններից լրիվին հանելու և նրա պաշարները ոչնչացնելու ճանապարհին։

Սովետական կառավարությունը, հաշվի առնելով ատոմային և ջրածնային զենքի փորձնական պայթեցումների անցանկալի հետևանքները, առաջարկում է, որ այդ զենքի փորձարկումները միաժամանակ դադարեցնեն այն բոլոր պետությունները, որոնք ունեն այդ զենքը։ Սովետական Միությունը, բնական է, չի կարող միակողմանիորեն դադարեցնել միջուկային զենքի փորձարկումները, քանի որ այդ դեպքում մեր երկիրը անշահավետ դրության մեջ կդրվեր Ամերիկայի Միացյալ Նահանգների և Անգլիայի համեմատությամբ, որոնք նույնպես փորձարկումներ են կատարում։

Ամերիկյան և անգլիական մամուլում հաճախ կարելի է հանդիպել մասսայական ո-

չընչացման զենքի փորձարկումները շարունակելու օգտին արվող դատողությունների։ Վերջերս ատոմային զենքի մրցավազքի բացահայտ կողմնակցի դերում հանդես եկավ Անգլիայի արտաքին գործերի մինիստր Սելվին Լլոյդը։ Իր ապրիլի 29-ի ռադիոճառում Լլոյդը անգլիական ջրածնային ռումբի առաջիկա փորձարկումները արդարացնում էր նրանով, թե իբր այդպիսի զենքի արտադրությունը... պատերազմի կանխման ամենաարդյունավետ միջոցն է։ Փորձելով տրևէ կերպ հիմնավորել իր այդ անհեթեթ դրույթը, անգլիական արտաքին գործերի մինիստրը դիմեց, ինչպես արվում է սովորաբար նման դեպքերում, մի ստահոդ փաստարկի, հայտարարելով, թե միջուկային զենքի փորձարկումների դադարեցման շարժումը «մեծ մասամբ ելնում է կոմունիստական աղբյուրներից»։

Լլոյդի ռազմատենչ ելույթին հակահարված տվեց նախ և առաջ անգլիական մամուլը։ Լեյբորիստական «Դեյլի գերալդ» թերթը իր խմբագրական հոդվածում գրեց. «Խույս տալով այն հիմնավոր տագնապից, որ պետք է ապրեն բոլոր խորհող մարդիկ այդ ռումբի կողմից տարածվող թույնի կապակցությամբ, անգլիական արտաքին գոր-



ծերի մինիստրը հայտարարեց, թե փորձարկումների դեմ ուղղված այդ ամբողջ ագիտացիան գալիս է Ռուսաստանի ուղեկիցներից ու գործակալներից։ Դեռ երբեք պետական պոստ գրավող ոչ մի գործիչ այդքան զայրացուցիչ բան չէր ասել»։ Մամուլի մի շարք օրգաններ և հասարակական որոշ կազմակերպություններ պահանջեցին Լլոյդին պաշտոնաթող անել։ Անգլիական հասարակայնության մեջ Լլոյդի ելույթի առաջ բերած այդպիսի ռեակցիան պատահական չէ։ Այստեղ գնալով ավելի ու ավելի շատ մարդիկ են սկսում հասկանալ, որ միջուկային զենքի գործադրումը կարող է ճակատագրական հետևանքներ ունենալ այնպիսի խիտ բնակեցված շրջանների համար, ինչպիսիք են Բրիտանական կղզիները։ Այդ պատճառով էլ Անգլիայում, ինչպես եվրոպական մյուս երկրներում, վերջերս լայն շարժում է սկսվել միջուկային զենքը արգելելու և նրա փորձարկումները դադարեցնելու համար։

Անգլիայի կոմունիստական պարտիան իր մայիսմեկյան մանիֆեստում բանվոր դասակարգին կոչ արեց՝ պայքարել ջրածնային ռումբերի փորձարկումները դադարեցնելու և միջուկային բոլոր տեսակի զենքերն արգելելու համար։

Անգլիայի շատ քաղաքներում տեղի են ունենում միտինգներ, որոնց մասնակիցները պահանջում են անհապաղ համաձայնագիր կնքել միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու մասին։ Այդ պահանջների պաշտպանությամբ հանդես են գալիս լեյբորիստական պարտիայի աչքի ընկնող գործիչները՝ պառլամենտի անդամներ Զիլիակուսը, Հենդերսոնը, Պարջիտերը և հասարակական շատ այլ գործիչներ։

Մեծ Բրիտանիայի և Հյուսիսային Իռլանդիայի բանվորների միության ամենամյա կոնֆերանսը, որը ներկայացնում է 300 հազար անդամ, ընդունեց մի բանաձև, որով անգլիական կառավարությանը կոչ է արվում «վճռականորեն վերսկսել փորձերը՝ Միացյալ Նահանգների և Ռուսաստանի կառավարությունների հետ համաձայնության գալու ատոմային ու ջրածնային ռումբերի արտադրությունն արգելելու վերաբերյալ, ապահովելով միջազգային տեսչության ու վերահսկողության համար անհրաժեշտ երաշխիքներ, իսկ նախքան այդպիսի համաձայնագրի կնքումը, հասնել այն բանին, որ համաձայնությամբ ձեռք բերվի այդ զենքի ամեն տեսակ փորձարկումները դադարեցնելու մասին, միաժամանակ աստիճանաբար



անցնելով սպառազինությունների բոլոր մյուս տեսակների կրճատմանը»։

Անգլիական հասարակայնության ատոմային պատերազմի սպառնալիքի դեմ ուղղված ջանքերի միավորման ասպարեզում մեծ աշխատանք է տանում միջուկային զենքի արգելման համար պայքարող Ազգային խորհուրդը, որը վերջերս ստեղծել են մի շարք պրոգրեսիվ գործիչներ, այդ թվում՝ պառլամենտի անդամ պացիֆիստներ և ձախ լեյբորիստներ։

Հոլանդիայում ապրիլի վերջերին հիմնադրվեց «Ատոմային զենքի դեմ պայքարող միջազգային կազմակերպություն» ստեղծող կոմիտե։ Նա հրապարակեց ամբողջ երկրագնդի բնակչությանն ուղղված մի դիմում, որով կոչ արեց՝ պայքարել միջուկային զենքի բոլոր փորձարկումները դադարեցնելու, այդ զենքի հետագա արտադրությունն արգելելու և եղած պաշարները ոչնչացնելու համար։

Ատոմային զենքի դեմ ուղղված շարժումը լայն թափ է ստացել Գերմանիայի Ֆեդերատիվ ռեսպուբլիկայում։ Այստեղ ատոմային զենքի փորձարկումների դադարեցման համար մղվող պայքարը զուգակցվում է արևմտագերմանական բանակն այդ զենքով

զինելու դեմ մղվող պայքարի հետ։ Ամբողջ աշխարհով մեկ հնչեց Արևմտյան Գերմանիայի 18 ատոմագետ գիտնականների ձայնը, որոնք հանդես եկան իրենց երկիրը ատոմային պոլիգոնի վերածելու դեմ։ Այդ գիտնականների կոչը պաշտպանեցին Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի հասարակական լայն շրջանները, նրա աչքի ընկնող հասարակական ու քաղաքական գործիչները։ Ատոմային զենքի փորձարկումները դադարեցնելու օգտին հանդես եկան, մասնավորապես, Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական պարտիայի նախագահ Օլենհաուերը, Բունդեստագի նախագահ Գերստենմայերը և շատ ուրիշներ։

Գերմանիայի կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն մի բաց նամակով դիմեց Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական պարտիայի բոլոր անդամներին ու գործիչներին, առաջարկելով նրանց՝ համատեղ գործողություններ ձեռնարկել ատոմային պատերազմի սպառնալիքի դեմ։ «Այժմ մեր բոլորիս առաջ,— ասված է նամակում— և հատկապես գերմանական բանվոր դասակարգի առաջ, սոցիալ-դեմոկրատների և կոմունիստների առաջ ծառացել է այն հարցը, թե ինչ պետք է անենք՝ ատոմային սպառա-



զինության հետ կապված սպառնալիքը կանխելու համար»։ Գերմանիայի կոմունիստական պարտիայի Կենտկոմը առաջարկեց ձեռնարկություններում և պրոֆմիություններում, սոցիալ-դեմոկրատական պարտիայի բոլոր կազմակերպություններում քննության առնել հետևյալ հիմնական պահանջները. անհապաղ դադարեցնել բոլոր ատոմային փորձարկումները և մասսայական ոչնչացման զենքի գործադրությամբ կատարվող մանևրները, վերացնել ատոմային պատերազմի համար գերմանական տերիտորիայում ստեղծված ամերիկյան և անգլիական բազաներն ու զինանոցները, Գերմանական Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան դուրս բերել ՆԱՏՕ-ից, հրաժարվել ատոմային զենքի պատրաստումից ու պահպանումից և այլ միջոցառումներից։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ամբողջ բնակչությունը ակտիվ կերպով մասնակցում է ատոմային ու ջրածնային զենքի արգելման համար մղվող պայքարին, արևմտա-գերմանական բանակը այդ զենքով զինելու դեմ ուղղված պայքարին։ Մայիսի 17-ին Գերմանիայի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի քաղաքների և համայնքների գերմանական համագումարի

գլխավոր Կոմիտեն Մագդեբուրգում տեղի ունեցած իր նիստում ընդունեց մի դիմում՝ ուղղված գերմանական բոլոր քաղաքներին ու համայնքներին։ Այդ դիմումի մեջ կոչ է արվում պահանջել, որպեսզի Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի կառավարությունը, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարության օրինակով, հանդես գա, հայտարարելով, որ ինքը դեմ է Գերմանիայի տերիտորիայում ատոմային զենք տեղադրելուն, դեմ է Գերմանիայում ատոմային զենք արտադրելու, ինչպես նաև դեմ է Գերմանիան այդ զենքով զինելուն։

Ատոմային զենքի փորձարկումները դադարեցնելու և ատոմային պատերազմի սպառնալիքը վերացնելու շարժումը վերջին շաբաթներս ընդգրկեց Եվրոպայի գրեթե բոլոր երկրները։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում աճում է ատոմային զենքի դադարեցման շարժումը։ «Նյուս դեյ» թերթը իր խմբագրական հոդվածում կոչ անելով դադարեցնել միջուկային զենքի փորձարկումները, նշում է, որ ԱՄՆ-ում շատ են այն մարդիկ, որոնք վճռականորեն հանդես են գալիս ի պաշտպանություն այդ պահանջի։ Այդ մարդկանց թվին են պատկանում ականավոր գիտնա-



կաններ, հասարակական ու քաղաքական գործիչներ։

Միջուկային զենքի փորձարկումների դադարեցման շարժումը բացառիկ մեծ թափ է ստացել Ճապոնիայում, այն երկրում, որի ժողովուրդը դարձավ ատոմային գրոհի առաջին զոհը։ Այդ շարժմանը մասնակցում են տարբեր պարտիաներ, հասարակական և կրոնական կազմակերպություններ, որոնք ներկայացնում են ճապոնական ազգի բոլոր խավերը։ Արտահայտելով ժողովրդի կամքը, Ճապոնիայի պառլամենտը դեռ անցյալ տարի դիմեց մյուս երկրների պառլամենտներին, կոչ անելով դադարեցնել ատոմային զենքի փորձարկումները։

Ատոմային պատերազմի սպառնալիքի դեմ ակտիվ կերպով հանդես են գալիս Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Հնդկաստանի, Ինդոնեզիայի, Բիրմայի և ասիական մյուս երկրների ժողովուրդները։

Միջուկային զենքի արգելման և նրա փորձարկումների դադարեցման համար վճռական պայքարի կոչ արեցին աշխատավորների Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան, Կանանց Միջազգային դեմոկրատական ֆեդերացիան, Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդե-

*բացիան և մյուս մասսայական կազմակերպությունները, որոնք իրենց շարքերում միավորում են բազմաթիվ երկրների տասնյակ միլիոնավոր մարդկանց։*

*Սովետական Միության ժողովուրդները միահամուռ կերպով ձգտում են աշխարհը փրկել ատոմային պատերազմի վտանգից։ Խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեն, արտահայտելով սովետական մարդկանց խոհերն ու զգացմունքները, վճռականորեն պաշտպանեց բոլոր ժողովուրդներին ուղղված Խաղաղության Համաշխարհային Խորհրդի կոչը՝ «վճռականորեն պահանջել, որ անհապաղ դադարեցվեն միջուկային զենքի փորձարկումները, որպեսզի հետագայում հասնենք մասսայական ոչնչացման այդ զենքի արգելման և դրանով իսկ կանխենք ատոմային պատերազմը»։*

*Այժմ ամբողջ աշխարհում միջուկային զենքի դեմ ծավալված շարժումը՝ արդի ժամանակների հզոր շարժումն է։ Այն կարող է և պետք է կանխի մարդկությանն սպառնացող ատոմային կործանարար պատերազմը։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՕԳՈՍՏՈՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. ՊԱՐՏԻԱՅԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ*

### Գրականություն

Ինֆորմացիոն հաղորդագրություն Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումի մասին: *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը Գ. Մ. Մալենկովի, Լ. Մ. Կագանովիչի, Վ. Մ. Մոլոտովի հակապարտիական խմբի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 4-ի համարում։*

Պարտիայի լենինյան միասնությունը անխորտակելի է, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 6-ի համարում։*

Ռեսպուբլիկայի և Երևանի պարտիական ակտիվի համատեղ ժողովը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 5-ի համարում։*

## 2. ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԻ ՊԱՏՎԻՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Գրականություն

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում:*

Դեպի Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը, *նյութեր ստանձնած պարտավորությունները կատարելու վերաբերյալ, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 2-ի և 10-ի համարներում:*

Բարելավել մրցության պարտիական ղեկավարությունը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 11-ի առաջնորդողը:*

## 3. ԱՆԿՈՐՈՒՍՏ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Հացահատիկային տնտեսությունը գյուղատնտեսության ամբողջ արտադրության հիմքն է, *ՍՄԿՊ XX համագումարին տված զեկուցումից, էջ 81—88, Հայպետհրատ, 1956:*

Բարձր բերքի կարևոր պայմանը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 4-ի առաջնորդողը:*



Բուսաբուծություն, *նյութեր հացահատիկային և մյուս կուլտուրաների մշակության վերաբերյալ, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 6-րդ համարում:*

## 4. ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՄԵԿ ՇՆՉԻՆ ԸՆԿՆՈՂ ՄՍԻ, ԿԱԹԻ, ՅՈՒՂԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՄԲ ՄՈՏԱԿԱ ՏԱՐԻՆԵՐԻՆ ՀԱՍՆԵՆՔ ԱՄՆ-ԻՆ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ ՌՍՖՍՌ Հյուսիս-Արևմուտքի մարզերի և ավտոնոմ ռեսպուբլիկաների գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 25-ի համարում:*

Երկրին տանք ավելի շատ միս ու կաթ, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի 5-րդ համարի առաջնորդողը:*

Բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու կապակցությամբ Սիսիանի, Ալավերդու, Ախտայի, Աշտարակի շրջանների պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունիս և հուլիս ամիսների համարներում:*

## 5. ՊԱՐՏԻԱՆ ԲԱՑԻ ԺՈՂՈՎՐԴԻ ՇԱՀԵՐԻՑ ՉՈՒՆԻ ՈՒՐԻՇ ՇԱՀԵՐ

Գրականություն

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը Գ. Մ. Մալենկովի, Լ. Մ. Կագանովիչի, Վ. Մ. Մոլոտովի հա-

կապարտիական խմբի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 4-ի համարում։*

Կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսություններից պետությանը գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումները վերացնելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1957 թվականի հուլիսի 4-ի որոշումը, տպագրված *«Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 5-ի համարում։*

Շնորհակալ ենք, շատ շնորհակալ, *Վեդի գյուղի կոլտնտեսականների նամակը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 6-ի համարում։*

*6. ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԵՎ ՈՒՍԱՆՈՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ 6-ՐԴ ՓԵՍՏԻՎԱԼԸ*

*(Զրույցի համար օգտագործել «Ավանգարդ» թերթի հուլիս և օգոստոս ամիսների համարները և «Ագիտատորի բլոկնոտ»-ի 14-րդ համարը)։*

*7. ԱՃՈՒՄ ԵՎ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ*

Գրականություն

*«Բարեկամության ճանապարհով» ընկեր Ն. Ս. Խրուշչովի և ընկերներ Յո. Բալաժի, Օ. Ի. Իվաշչեն-*



*կոյի ճառերը Չեխոսլովակիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 11-ի համարում։*

*Խանդավառ դիմավորում Պրագայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 12-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ «ՉԿԴ—«Ստալինգրադ» գործարանում 1957 թվականի հուլիսի 11-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 13-ի համարում։*

---

СОДЕРЖАНИЕ





Խմբագիր Վ. ԲԶՆՈՒՆԻ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 14 1957 г.

*ՎՖ 06946 Պատվեր 564 Տիրաժ 8.550*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*